## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

*Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին սովետական մարդկանց մղած պայքարի յուրաքանչյուր օրը լի է նոր հաղթանակներով։ Միլիոնների աչքի առաջ աննախընթաց հաջողությամբ կառուցվում է կոմունիստական հասարակության հոյակապ շենքը, մարդկության ամենանվիրական երազանքները վեր են ածվում իրականության։*

*Ստալինյան հնգամյակների տարիներին նվաճած հաղթանակները անխորտակելի հիմք են դարձել կոմունիստական շինարարության նոր, ավելի լայն, իրենց մասշտաբներով տնտեսական ավելի մեծ նշանակություն ունեցող ծրագրերի համար։*

*Մեր երկրի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ ընդունեց սովետական կառավարության որոշումները Ստալինգրադի, Կույբիշևի, Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական ջր-*



բանցքի, Ուկրաինայի հարավային և Ղրիմի հյուսիսային շրջանների ոռոգիչ սիստեմների կառուցման մասին։ Մեր երկրի աշխատավորները ջերմորեն ողջունելով ու համախոհություն տալով այդ հոյակապ որոշումներին, իրենց պատրաստակամությունն են հայտնում օգնելու նոր վիթխարի կառուցումների շինարարությանը։

Սովետական հայրենասերները ուզում են, որ մեր պարտիայի և կառավարության կողմից տրվող յուրաքանչյուր առաջադրանքը կատարվի ժամանակին ու պատվով։ Նրանք իրենց սեփական փորձով խորապես համոզվել են, որ բոլշևիկների պարտիայի և Սովետական կառավարության ամեն մի միջոցառում, փոքր թե մեծ, ուղղված է սովետական ժողովրդի բարօրության գործին, կոմունիզմի հաղթանակը մոտեցնելու գործին։

Այդ համառ նրանց գոտեպնդում է, թե չտալիս աշխատանքում, հնարավորություն ստեղծում, որպեսզի աշխատողը նախաձեռնություն հանդես բերի, ստեղծագործական մոտեցում ունենա իրեն հանձնարարված գործի նկատմամբ։ Մասսաների ստեղծագործ նախաձեռնության փայլուն արտահայտություններից մեկն էլ սոցիալիստական մրցությունն է, որը գնալով ավելի ու ավելի է ընդարձակում իր շրջանակները։



Այժմ մենք ունենք ոչ միայն առանձին ստախանովականներ, այլ ստախանովյան աշխատանքի անցած ամբողջ բրիգադաներ, ցեխեր, գործարաններ։ Այդ ցույց է տալիս, որ սոցիալիստական մրցությունը մտել է իր զարգացման մի նոր, ավելի բարձր փուլի մեջ։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ սոցիալիստական մրցության հիմնական սկզբունքը առաջավորի ընկերական օգնությունն է ետ մնացողին ընդհանուր վերելք ձեռք բերելու համար։ Փորձը ցույց է տալիս, որ սոցիալիստական մրցությունը ծավալվելով բազմազան ձևեր է ընդունում։ Արտադրողականությունը բարձրացնելու, ինքնարժեքը իջեցնելու, արտադրանքի որակը լավացնելու համար մեր գործարանների առաջավոր բանվորները, ինժեներատեխնիկական աշխատողները նորանոր նախաձեռնություններ են հանդես բերում, փոխում են աշխատանքի հնացած մեթոդները, կիրառելով նոր մեթոդներ, մշակում են արտադրության ավելի առաջավոր, ավելի կատարելագործված պրիոմներ։

Այժմ առաջավորների փորձի ուսումնասիրման, պրոպագանդայի ու ներդրման գործի խելացի կազմակերպումը հսկայական նշանակություն ունի սոցիալիստական մրց-

ցության հետագա ծավալման, հետևաբար և մեր ամբողջ ժողովրդական տնտեսության նոր վերելքի ապահովման գործում:

Պետք է նշել, որ մեր մի շարք ագիտատորներ սոցիալիստական մրցության կազմակերպման գործը սահմանափակում են ընդհանուր կոչերով՝ մրցություն ծավալելու անհրաժեշտության մասին, հրապուրվում են առանձին ռեկորդների մասին խոսելով, մոռանալով, որ առանց առաջավորների փորձի խոր ուսումնասիրության, պրոպագանդայի և ներդրման սոցիալիստական մրցությունը չի կարող մասսայական բնույթ կրել:

Երևանի, Լենինականի և ռեսպուբլիկայի մի շարք այլ քաղաքների առանձին գործարաններում կարելի է հանդիպել փաստերի, երբ ագիտկոլեկտիվները ձևական մոտեցում են հանդես բերում մրցության կազմակերպման գործին: Բերենք Երևանի ավտոդողերի գործարանի օրինակը: Այստեղ բազմաթիվ բանվորներ աշխատանքի մեջ առաջավոր պրիոմներ կիրառելու շնորհիվ սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են իրենց առաջադրանքները: Օրինակ, ավտոդողեր հավաքող բանվոր Արամ Եղիազարյանը յուրաքանչյուր հերթափոխում իր առաջադրանքը կատարում է ավելի քան 200 տոկոսով, նրանից ետ չեն մնում նույն գործարա-



նի բանվորներ՝ Ժ. Կարապետյանը, Ե. Մուրադյանը: Ի՞նչ է անում գործարանի ագիտկոլեկտիվը այս առաջավորների փորձը մասսայականացնելու և ներդրելու համար: Գրեթե ոչինչ:

Ստախանովական փորձի հաջող ներդրման, այն բոլոր բանվորների սեփականությունը դարձնելու գործում մեծ դեր կարող են խաղալ ինժեներա-տեխնիկական անձնակազմը, գիտության մարդիկ: Ագիտատորները ամեն կերպ պետք է ամրապնդեն ստախանովականների և ինժեներա-տեխնիկական աշխատողների, այլ խոսքով ասած՝ պրակտիկայի և գիտության կապը:

Ինժեներների գործնական մասնակցությունը, բանվորների հետ ունեցած նրանց զրույցները մեծ չափով կհեշտացնեն այս կամ այն ստախանովականի առաջավոր փորձը ցեխի կամ ամբողջ գործարանի բանվորների սեփականությունը դարձնելուն:

Ամեն մի ագիտատոր պետք է ձգտի առավել հետաքրքիր դարձնելու ստախանովական բանվորների փորձի մասսայականացման կապակցությամբ կազմակերպվող իր զրույցները: Զրույցի գնալուց առաջ նա պետք է բազմակողմանիորեն ուսումնասիրի թեման և ներկայանա իր բանվորներին, որպես գործին գիտակ մի մարդ: Այդպես են աշխա-

տում, օրինակ, Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի ագիտատոր ընկ. Վ. Մովսիսյանը, Ձերժինսկու անվան գործարանի ագիտատոր ընկ. Ա. Օվիկյանը, Լենինականի Տեքստիլ կոմբինատի ագիտատոր ընկ. Խ. Տոնոյանը և ուրիշներ։

Փորձի մասսայականացման ու տարածման բնագավառում կարևոր նշանակություն ունի նաև ցուցադրական ագիտացիան։ Գործարանային ակումբներում, ցեխերում, գրասենյակներում փակցված պլակատները, լոզունգները պետք է կոչ անեն բանվորներին առաջավորների աշխատանքի մեթոդները արագորեն յուրացնելու մասին։ Նույն նպատակին պետք է ծառայեն հրատարակվող պատի թերթերը, «կայծակները» բյուլետենները։ Թող բանվորները այդ թերթերում պատմեն, թե ինչպես, ինչ ճանապարհով են ձեռք բերում իրենց աշխատանքային հաջողությունները, ինչն է խանգարում ավելի արդյունավետ աշխատելուն։

Սոցիալիստական մրցության ավելի լայն ծավալման շահերը պահանջում են ամենուրեք ուսումնասիրել, մասսայականացնել և ներդրել արտադրության մեջ մեր երկրի առաջավոր բանվորների աշխատանքային արժեքավոր փորձը։



ԶՈՈՏԵԽՆԻԿԻ ԶՐՈՒՅՑԸ

# ՊԱՏՐԱՍՏ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՁՄԵՌՈՒՄԸ

Անասնապահության զարգացման եռամյա պլանի կատարման անհրաժեշտ պայմաններից մեկը հանդիսանում է անասունների ձմռան հաջող նախապատրաստումն ու անցկացումը։ Դրա համար անհրաժեշտ է, որպեսզի անասունների ամբողջ գլխաքանակը ձմեռվա ընթացքում լրիվ չափով ապահովված լինի կերով և բարեկարգ գոմերով։ Այդ երկու հարցերի լրիվ լուծումը այսօր հանդիսանում է մեր անասնապահների առաջնահերթ խնդիրը։

Անասունների ձմեռման համար կերի կայուն բազա ստեղծել այդ նշանակում է ոչ միայն ունենալ այնքան կեր, որքան կպահանջվի մսուրային շրջանի ընթացքում, այլև յուրաքանչյուր կոլտնտեսություն պետք է ստեղծի ապահովագրական ֆոնդ՝ իր հոտի

անասնակերի պահանջի 10—15 տոկոսի չափով։

Կերի հիմնական աղբյուրը հանդիսանում է խոտհարքը, բայց այն կոլտնտեսությունները, որոնք չունեն բավարար չափի խոտհարքներ, իրենց անասունների կերի պակասը պետք է լրացնեն նաև լրացուցիչ հումքի հաշվին։ Նրանք պետք է կազմակերպեն բնական խոտհարքների երկրորդ հունձ, իսկ ցանովի խոտհարքների չորս հունձ։

Բայց խոտհարքներից բացի կոլտնտեսությունները ունեն կերի բազան լրացնելու նաև մի շարք ուրիշ հնարավորություններ, ինչպես օրինակ այգիներում և բանջարանոցներում եղած տարածությունների հնձումը, կոմբայնով հնձած հացահատիկի տարածությունների ծղոտի հավաքումը, բանջարանոցային կուլտուրաների մնացորդներից և մոլախոտերից սիլոս պատրաստելը և այլն։

Այս աշխատանքները կատարելու գործում կոլտնտեսությանը մեծ օգնություն կարող են ցույց տալ ագրոնոմները։ Աշխատելով անմիջապես արտադրության մեջ, կապված լինելով կոլտնտեսականների հետ, նրանք ամենից լավ են տեսնում կերի պակասը



լրացնելու հնարավորությունները։ Կոլտնտեսային արտադրության որ բնագավառում էլ որ աշխատելիս լինի ագրոնոմը՝ այգեգործական բրիգադայում, թե բամբակացան օղակում, անասնապահական ֆերմայում թե մի այլ ճյուղում, նա այս օրերին մշտապես պետք է մտահոգված լինի գյուղատնտեսության կենտրոնական հարցով՝ անասնապահության զարգացման հարցով։

Եթե այսօր կան կոլտնտեսություններ, որոնք անասունների ձմեռման համար դեռևս անհրաժեշտ քանակությամբ կեր չունեն, ապա դրա համար պատասխանատու են նաև այդ կոլտնտեսությունների ագրոնոմները։ Այսպես օրինակ, Մեղրու, Սիսիանի, Վեդու, Ղափանի, Ալավերդու, Դիլիջանի և Կիրովականի շրջանների կոլտնտեսությունները անցյալ տարի մեծ դժվարությամբ անցկացրին անասունների ձմեռումը՝ կերի պակասի հետևանքով։ Այդ նույն շրջաններում այս տարի ևս վատ է կատարվում կերի կուտակման պլանը՝ այն կատարված է 30—50 տոկոսով։

Տարակույս չի կարող լինել այն բանում, որ եթե այդ շրջանների ագրոնոմները իրենց զրույցների ընթացքում կոլտնտեսականներին բացատրեին անցած տարվա թերա-

ցումների հետևանքները, ցույց տային, թե կերի կուտակման ինչ ռեզերվներ ունի իրենց կոլտնտեսությունը, մոբիլիզացնեին կոլտնտեսականներին հավաքելու յուրաքանչյուր կիլոգրամ կերը, համարձակորեն քննադատեին կերի կուտակման ասպարեզում եղած թերությունները, ապա այդ շրջանների կոլտնտեսությունների անասունները նույնպես այսօր ապահովված կլինեին ձմռան կերով։

Ինչպես հայտնի է, գիտականորեն և գործնականում հաստատված է սիլոսային կերի արժեքավոր դերը։ Մինչդեռ կան դեռևս առանձին կոլտնտեսություններ, որտեղ հարկ եղած ուշադրությունը չեն դարձնում կերի այդ տեսակի հայթայթման վրա, իսկ հաճախ էլ առանձին ղեկավարներ իրենց հակագիտական պատճառաբանություններով դեմ են գնում սիլոսային կերին, ասելով, թե սիլոսով կերակրվող կովերի կաթից սիլոսի հոտ է գալիս։ Ագիտատորները պետք է կոլխոզնիկներին բացատրեն, որ սիլոսը ոչ միայն լրացնում է կերի պակասը, այլև կարգավորում է անասունի մարսողությունը և բարձրացնում կաթնատվությունը։ Ագիտատորները կոլտնտեսականներին պետք է պարզաբանեն, որ կաթից սիլոսահոտ է գալիս միայն այն պատճառով, որ կովերին կթելուց առաջ



նրանց կերակրել են սիլոսով և նրա հոտը տարածվել է գոմում, իսկ կաթը ընդունակություն ունի այդ հոտը ներծծել։ Ուրեմն կովերին սիլոսով պետք է կերակրել ոչ թե կթելուց առաջ, այլ հետո։

Սխալ է և հակագիտական նաև այն կարծիքը, որ հղի անասուններին չի կարելի կերակրել սիլոսով։ Լավորակ սիլոսով անասունին կարելի է կերակրել մինչև հղիության վերջին շրջանը՝ այսինքն դադարեցնել սիլոս տալը ծնից 8—10 օր առաջ։

Այսպես ուրեմն, սիլոսային կերերի կուտակումը այսօր պետք է գտնվի կոլտնտեսականների ուշադրության կենտրոնում։

Մի քանի խոսք սիլոսի պատրաստման տեխնիկայի մասին։ Սիլոսի մասսան անհրաժեշտ է հավաքել հյութալի վիճակում (չոր մասսայից սիլոս չի ստացվի) լավ ամլացնել, լցնել հորերը և ուժեղ մամլել, այնուհետև ծածկել չոր խոտով, կամ ծղոտով, որի վրայից ծածկել հողով և ապա ցեխի շաղաղով։ Սիլոսահորերը պետք է լցնել այն հաշվով, որպեսզի սիլոսանյութը հողի մակերեսից բարձր լինի 50—60 սանտիմետրից ոչ պակաս։ Սիլոսահորերի լցնելու ամբողջ պրոցեսը պետք է տևի 2—3 օրից ոչ ավելի,

իսկ աշտարակների լցումը՝ 5—7 օր: Ավելի երկար տևողությունը կգցի սիլոսի որակը:

ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ մինչև հոկտեմբերի 1-ը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում պետք է ավարտվի անասնապահական նոր շենքերի կառուցումը և հների լրիվ վերանորոգումը, սպիտակեցումը և ախտահանումը: Առաջավոր կոլտնտեսություններն արդեն կատարել են այդ աշխատանքը, բայց դեռ կան կոլտնտեսություններ, որոնք անասունների ձմեռման համար դեռևս լրիվ չեն նախապատրաստել շենքերը: Այդպիսի կոլտնտեսությունների թվին են պատկանում, օրինակ, Մարտունու շրջանի Թազաքյանդ, Լիճք, Աստղաձոր գյուղերի կոլտնտեսությունները:

Այդ գյուղերի ագիտատորները կարող են հարց տալ, թե ի՞նչ կարող են անել իրենք, դա կոլտնտեսության վարչության գործն է: Այդ իհարկե սխալ մոտեցում է: Մի՞թե այն ագիտատորը, որը ագիտացիոն-մասսայական աշխատանք է տանում կոլտնտեսության շինարարական բրիգադայում, պատասխանատու չի բրիգադայի պլանների կատարման համար, մի՞թե նա չի կարող ժամանակին պարտկազմակերպության, կոլտնտեսության վարչության առաջ հարց բարձրաց-



նել, որ անասնապահական շենքերի շինարարության, վերանորոգման պլանները չեն կատարվում այսինչ-այսինչ պատճառներով: Եվ վերջապես մի՞թե անասնապահական ֆերմայի ագիտատորը պատասխանատու չի այն բանի համար, որ ֆերմայի գոմերը սպիտակեցված, ախտահանված չեն, որ չի լուծված ջրի մատակարարման հարցը և այլն:

Միանգամայն պարզ է, որ ինչպես վերոհիշյալ, այնպես նաև իրենց անասնապահական շենքերը ձմռանը չնախապատրաստած մյուս կոլտնտեսությունների ագիտատորները, եթե կատարեին իրենց վրա դրված պատվավոր ու պատասխանատու խնդիրները, ապա նրանք մեծապես օգնած կլինեին կոլտնտեսություններին՝ անասունների ձմեռումը նախապատրաստելու գործում:

Մինչև անասունների մսուրային շրջանի սկսվելը քիչ ժամանակ է մնացել: Այդ ժամանակվա ընթացքում ագիտատորները իրենց բացատրական-մասսայական աշխատանքով պետք է օգնեն կոլտնտեսականներին՝ մինչև վերջին կիլոգրամը հավաքել և տեղափոխել դաշտում եղած կերը, ավարտել անասնապահական շենքերի շինարարությունը, նորոգումը, սպիտակեցումն ու ախտահանումը:

*Համաձայն վերադաս օրգանների որոշման այս տարի ռեսպուբլիկայի կոլխոզներում 100 տոկոսով պետք է անցնել հորթերին ձեռքով կերակրելու մեթոդին։ Այժմվանից անհրաժեշտ է նախապատրաստել հորթանոցները, ձեռք բերել անհրաժեշտ քանակությամբ կաթնածծիչներ, դույլեր և այլ պարագաներ։ Անասնապահական ֆերմաներն այժմվանից պետք է կոմպլեկտավորել անասնապահների որակյալ կադրերով։*

*Անասունների առաջիկա ձմեռումը լավագույն կերպով դիմավորելու և կազմակերպված անցկացնելու գործում իրենց վրա դըրված պատասխանատու խնդիրները մեր ագիտատորները պետք է պատվով կատարեն։*

Զոոտեխնիկ՝ Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆ



---

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

*Սեպտեմբերի 21-ին հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ Դնեպր գետի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայան, Հարավ-Ուկրաինական ջրանցք, Հյուսիս-Ղրիմյան ջրանցք կառուցելու և Ուկրաինայի հարավային շրջանների ու Ղրիմի հյուսիսային շրջանների հողերը ոռոգելու մասին։*

*Այդ որոշմամբ նախատեսված է կառուցել ոռոգիչ սիստեմ Ուկրաինայի հարավային շրջաններում և Ղրիմի հյուսիսային շըրջաններում մեկ և կես միլիոն հեկտար հող ոռոգելու և, դրանից բացի, մեկ միլիոն յոթ հարյուր հազար հեկտար հող ջրովի դարձնելու համար, և ստեղծել նոր հիդրոէներգետիկ բազա Դնեպր գետի վրա գյուղատնտեսությանն ու արդյունաբերությանը էլեկտրաէներգիա մատակարարելու համար։*

*Հիշյալ նպատակներով կառուցվելու են՝*

*— հիդրոէլեկտրակայան Դնեպր գետի վրա Կախովկա քաղաքի շրջանում, 250 հազար կիլովատ սահմանված կարողությամբ, միջին ջրատարության դեպքում տարեկան*

մոտ մեկ միլիարդ երկու հարյուր միլիոն կիլովատ էլեկտրաէներգիայի արտադրությամբ, ամբարտակներ, նավագնացության շլյուզ, 14 միլիարդ խորանարդ մետր տարողությամբ խոշոր ջրամբար և ջրհան կայաններ.

— Հարավ-Ուկրաինական ջրանցք, որը ջուրը վերցնելու է Դնեպրից վայրկյանում 600—650 խորանարդ մետր քանակությամբ և անցնելու է հետևյալ գծով՝ Դնեպրի վրա գտնվող Զապորոժյեից դեպի Մոլոչնայա գետը, այնուհետև Ասկանիա-Նովայի ուղղությամբ մինչև Սիվաշ և որպես նրա շարունակություն կառուցել Հյուսիս-Ղրիմյան ջրանցք հետևյալ գծով՝ Սիվաշից դեպի Ջանկոյ, Ղրիմի տափաստանային շրջաններով մինչև Կերչ. երկու ջրանցքների ընդհանուր երկարությունն է 550 կիլոմետր.

— ամբարտակ ջրամբարով Մելիտոպոլից հյուսիս, Մոլոչնայա գետի վրա ջրանցքի գծում վեց միլիարդ խորանարդ մետր տարողությամբ և ամբարտակին կից հիդրոէլեկտրակայան 10 հազար կիլովատ սահմանված կարողությամբ.

— Ասկանիա—Նովո-Կախովկա գծով 60 կիլոմետր երկարությամբ ջրանցք.

— 300 կիլոմետր ընդհանուր երկարու-



թյամբ խոշոր ջրատար ոռոգիչ առուներ ջրհան կայաններով:

Այս բոլոր աշխատանքները պետք է ավարտվեն 1957 թվականին:

Ուկրաինայի հարավային շրջանների և Ղրիմի հյուսիսային շրջանների հողերի ոռոգումը հնարավորություն կտա այդ շրջաններում ամենուրեք զարգացնել բամբակենու մշակությունը, ստանալ ցորենի և ուրիշ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերք, ապահովել մթերատու անասնապահության հետագա զարգացումը, նրբագեղմ ոչխարաբուծությունը, թռչնաբուծությունը: Մեծ մասշտաբներով էլեկտրաէներգիան կօգտագործվի գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման համար:

———□———



# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՈՌՈԳՈՒՄՆԵՐԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ՍԻՍՏԵՄԸ

Թերիայի շրջանի Ստալինի անվան կոլխոզի ագիտատոր Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ անցկացրած զրույցը

*Անցյալ զրույցում ես ձեզ պատմեցի Վոլգա գետի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայաններ կառուցելու մասին ընդունված մեր կառավարության ընդունած որոշումների մասին,— իր զրույցն սկսեց ագիտատոր Գուրգեն Պետրոսյանը։— Դուք տեսաք, թե այդ վիթխարի նախագծումների իրականացմամբ մեր երկիրն ինչպիսի հսկայական քանակությամբ էժան էլեկտրաէներգիա կստանա։ Ինչպես ասացինք, Վոլգայի նոր կառուցումների շնորհիվ նրա միջին և ներքին հոսանքի շրջանում ոռոգելի և ջրովի կդառնան մոտ 14 միլիոն հեկտար բարեբեր հողային տարածություններ։*

*Բոլշևիկների պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ խոշոր նշանակություն են տվել ոռոգումների գործին, որպես ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն միջոցի։*



*Ընկեր Ստալինը դեռևս 1924 թվականին նշեց, որ անհրաժեշտ է ամեն ինչ անել, որպեսզի հետագայում մեր երկիրը ապահովված լինի երաշտի պատահականություններից։ «Մտածում ենք գործն սկսել,—գրել է ընկեր Ստալինը,— մինիմալ չափով անհրաժեշտ մելիորատիվ հողամասը Սամարա—Սարատով—Ցարիցին—Աստրախան—Ստավրոպոլ զոնայով կազմելուց... Դա ռևոլյուցիայի սկիզբը կլինի մեր գյուղատնտեսության մեջ»։*

*Այսօր ես ձեզ կպատմեմ մեր կառավարության մի նոր, պատմական որոշման մասին։ Այդ ստալինյան կանխատեսումների իրականացման մի նոր, փայլուն էջ է։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում է ընդունել Ամու-Դարյա—Կրասնովոդսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցք կառուցելու, Արևմտյան Թուրքմենիայի Մերձկասպյան հարթավայրերի հարավային շրջանների, Ամու-Դարիայի ստորին հոսանքի և Կարա-Կում անապատի արևմտյան մասի հողերը ոռոգելու ու ջրովի դարձնելու մասին։ Այդ ստալինյան դարաշրջանի՝ իրոք դարաշրջանի իրրիգացիոն խոշորագույն շինարարությունն է ամբողջ աշխարհում։ Այս վիթխարի կառուցումը իրագործվում է Արևմտյան Թուրքմենիայի Մերձկասպյան հարթավայրի հարավային շրջաններում, Ա-*

մու-Դարյա գետի ստորին հոսանքի հողերում և Կարա-Կում անապատի արևմտյան մասում արդյունաբերական ձեռնարկությունների ջրամատակարարումը, գլխավորապես բամբակագործության զարգացման համար նոր հողերի ոռոգումը, արոտավայրերի ջրովի դարձնելը և անասնաբուծության կերի բազայի հետագա զարգացումը, այդ շրջաններում արդյունաբերության և գյուղատնտեսության համար հիդրոէլեկտրաէներգիայի ստացումն ապահովելու նպատակով։

Այժմ մանրամասն պարզաբանենք, թե այս ինչ է նշանակում։

Ահա նայեցեք քարտեզին։ Պամիրի լեռներից մինչև Արալյան ծովը հոսում է հորդառատ Ամու-Դարյա գետը, որն ամեն տարի ծովն է թափում վիթխարի քանակությամբ ջուր։ Բայց ջուրն անօգուտ գոլորշիանում է օդի մեջ, այն դեպքում, երբ գետի կողքին ձգվում են անապատների հսկայական տարածությունները՝ աջից Կըզըլ-Կումը, ձախից՝ Կարա-Կումը։ Բուսականությունը այս անապատներում շատ աղքատիկ է։ Միայն տեղ-տեղ հանդիպում են սաքսաուլի թփեր, անապատային բոշխ և ուղտափուշ։ Միանգամայն ջրազուրկ է նաև Մերձկասպյան հարթավայրը։ Այժմ Թուրքմենական ռես-



պուբլիկայի տերիտորիայի 80 տոկոսը կազմում են անբերրի ավազահողերը։

Անապատային այս հողերը կենդանացնելու, Ամու-Դարյա գետը Կասպից ծովի կողմը շուռ տալու միտքը ծագել է դեռևս Պետրոս Առաջինի ժամանակներում։ Այդ միտքը գրավել է երկրի լավագույն մտածողներին, բայց ցարական Ռուսաստանը ի վիճակի չէր իրականացնել այն։ Միայն Սովետական հզոր պետությունն է, որ ի վիճակի է ձեռնարկել այդպիսի վիթխարի կառուցման։

Սովետական գիտնականները առաջին անգամ Կարա-Կում եկան 25 տարի առաջ։ Նրանց էքսպեդիցիայի շնորհիվ սկսվեց պլանաչափ հարձակումը անջուր ավազուտների վրա։ Ավելի ուշ անապատում երևան եկան արդյունաբերական առաջին ձեռնարկությունները, իսկ այսօր սովետական մարդիկ լայն ճակատով հարձակվում են ավազուտների վրա՝ դրանք լիովին նվաճելու համար։

Ամու-Դարյա—Կրասնովոդսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցքի երկարությունն է 1.100 կիլոմետր։ Իր երկարությամբ այդ ջրանցքը կարող է համեմատվել միայն Մեծ Չինական ջրանցքի հետ։ Իսկ աշխարհի մնացած ջրանցքները, այդ թվում ամերիկյան, հնդկական և եգիպտական ջրանցքները, ի-

րենց երկարությամբ վիջում են նրան։ Գլխավոր Թուրքմենական ջրանցքի աշխատանքների վիթխարիությունը պատկերացնելու համար, բավական է ասել, որ այն կառուցելու համար անհրաժեշտ կլինի հանել 300 միլիոն խորանարդ մետր հող, դնել մոտ մեկ և կես միլիոն խորանարդ մետր բետոն։

Գլխավոր Թուրքմենական ջրանցքն իր ըսկիզբն առնելու է Ամու-Դարյա գետի վրա գտնվող Թախիա-Թաշից, շրջանցելու է Սարիկամիշի հովիտը և ապա Կարա-Կում անապատով դեպի Արևմտյան Թուրքմենիայի Մերձկասպյան հարթավայրի անջրդի շրջանները։

Ջրանցքի վրա իրագործվելու են հետևյալ կառուցումները.

— ամբարտակ Ամու-Դարյա գետի վրա Թախի-Թաշի մոտ (որտեղից սկիզբ է առնելու ջրանցքը), և խոշոր ջրամբարներ ունեցող երկու ամբարտակ՝ Գլխավոր Թուրքմենական ջրանցքի վրա.

— երեք հիդրոէլեկտրակայան՝ հարյուր հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ.

— 1.200 կիլոմետր ընդհանուր երկարությամբ խոշոր ջրատար ոռոգիչ և շրջատար առուներ՝ Արևմտյան Թուրքմենիայի Մերձկասպյան հարթավայրի հարավային շրջան-



ների և Ամու-Դարյա գետի ստորին հոսանքի հողերը ոռոգելու համար.

— Գլխավոր Թուրքմենական ջրանցքից սկիզբ առնող 100 կիլոմետր ընդհանուր երկարությամբ խոշոր ջրատար խողովակներ՝ արդյունաբերական ձեռնարկություններին և բնակավայրերին ջուր մատակարարելու համար։

Սահմանված է, որ ջրանցքը Ամու-Դարյա գետից մեկ վայրկյանում վերցնելու է 350—400 խորանարդ մետր ջուր, որը հետագայում հասցվելու է մեկ վայրկյանում մինչև 600 խորանարդ մետրի։ Այսպիսով Գլխավոր Թուրքմենական ջրանցքով կհոսի ավելի շատ քանակությամբ ջուր, քան Մոսկվայի անվան ջրանցքով։ Ջրանցքի՝ Ամու-Դարյա գետից վերցրած ջրերից ոչ մի կաթիլ չի թափվի Կասպից ծովը։

Այս վիթխարի ջրանցքի կառուցումով՝

— ոռոգելի կդառնան և գյուղատնտեսության կողմից կյուրացվեն մեկ միլիոն երեք հարյուր հազար հեկտար նոր հողեր՝ գլխավորապես բամբակագործության նպատակով.

— ջրովի կդառնան ջրանցքի աղդեցության գոտում գտնվող Կարա-Կում անապատի մոտավորապես յոթ միլիոն հեկտար արոտավայրերը.

— Արևմտյան Թուրքմենիայի արդյունաբերական ձեռնարկությունները, երկաթուղային տրանսպորտը լիակատար կերպով կապահովվեն խմելու և տեխնիկական ջրով։ Կապահովվի այդ շրջանի բնակավայրերի ջրամատակարարումը և կանաչապատումը.

— Գլխավոր Թուրքմենական ջրանցքի, խոշոր ջրատար առվիչ և շրջատար առուների, նոր ոռոգելի հողերի սահմանների երկարությամբ, արդյունաբերական ձեռնարկությունների և բնակավայրերի շուրջը կստեղծվեն մոտ հինգ հարյուր հազար հեկտար դաշտապաշտպան անտառաշերտեր։

Աշխարհի խոշորագույն Գլխավոր Թուրքմենական ջրանցքի կառուցման աշխատանքները սկսվելու են 1951 թվականից և ամբողջովին ավարտվելու են 1957 թվականին։ Կանցնի ընդամենը միքանի տարի և սև ավազուտների անապատը կվերածվի բարեբեր ոսկե հովտի։ Կենարար ջրով հագեցած հողը հազարապատիկ կվարձատրի սովետական մարդկանց անխոնջ աշխատանքը։ Միլիոնավոր տոննաներով բամբակ, ընտիր հացահատիկ, մերձարևադարձային պտուղներ ու ամեն տեսակի մրգեր և բանջարեղեն, տեխնիկական բազմապիսի կուլտուրաներ և բարձրարժեք անտառանյութ, միլիոնավոր



գլուխ բարձր մթերատու անասուններ,— ահա թե ինչ կտա ջրով հագեցած անապատի հողը։

Նոր ոռոգելի հողերը նախատեսված է ամենից առաջ օգտագործել Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանում բամբակի մշակությունն ավելացնելու, գլխավորապես երկարաթել բամբակենու արժեքավոր սորտերի աճեցման համար։ Ստեղծվում է սովետական բամբակագործության խոշորագույն բազա, որը կունենա այնպիսի նշանակություն, ինչպիսին ունի այժմ Ֆերգանայի հարթավայրը։ Բամբակի հումքի արտադրությունը, հաշվի առնելով բերքատվության հետագա բարձրացումը, կավելանա մի քանի անգամ։ Բամբակենու հետ ցանքաշրջանառության մեջ կզբաղեցվեն մինչև 250 հազար հեկտար բազմամյա կերաբույսի ցանքեր։

Խորեզմի օազիսում հարկ կլինի կառուցել ավելի քան 30 նոր բամբակազտիչ գործարան, 14—16 ձեթի գործարաններ, կազմակերպել 30—35 նոր շրջաններ և մինչև 70 մեքենատրակտորային կայաններ։

Առատ ջուրը, ջերմ արևը հնարավորություն կտան այդ հողերի վրա խոշոր քանակությամբ աճեցնել մերձարևադարձային

այնպիսի կուլտուրաներ, ինչպես ձիթապըտուղ, թուզ, խուրմա, նուռ և այլն։

Ինչպես ասացի, կառավարության որոշմամբ նախատեսված է ստեղծել մոտ հինգ հարյուր հազար հեկտար ընդհանուր տարածությամբ անտառաշերտ։ Շարժուն ավազուտներն ամրացնելու համար նախատեսվել է նրանց վրա ստեղծել բուսական ծածկույթ՝ ծառերի ու թփերի մանր տեսակներից՝ սակսաուլից, կանդիմից, չերքեզից, գրեբենշչիկից, լոխից։

Ռուգելի շրջաններում խոշոր անտառաշերտերը կազմված են լինելու կայուն ու երկարակյաց տեսակներից՝ սպիտակ ակացիայից, գլեդիչիայից, հացենուց, բարդուց, այլանտից, թեղիից, թթենուց և ծիրանից։ Մերձկասպյան հարթավայրի մերձարևադարձային շրջանում՝ Կըզըլ-Աթրեկում կկատարվեն ձիթենիների, էվկալիպտների, խուրմայի, ունաբի, էվկոմիայի, թզենու, նռնենու, ցիտրուսային բույսերի, նշենու, արմավենու և այլ պտղատու ու տեխնիկական արժեքավոր տեսակների տնկումներ։

Կոլխոզներում և սովխոզներում դաշտապաշտպան անտառաշերտերը բաղկացած են լինելու գլխավորապես թթենիներից և պտղատու ծառերից։



Յոթը միլիոն հեկտար արոտավայրերի ջըրովի դարձնելը շեշտակի կերպով կբարձրացնի Թուրքմենական ռեսպուբլիկայի կերի բալանսը և հզոր խթան կհանդիսանա անասնապահության զարգացման համար։ Միքանի անգամ կավելանա ոչխարների, խոշոր եղջերավոր անասունների և ուղտերի գլխաքանակը։ Դրա հետ միասին նշանակալի չափով կըբարձրանա մթերատվությունը։

Գլխավոր Թուրքմենական ջրանցքի կառուցումը հանդիսանում է բնության վերափոխման, մեր սոցիալիստական Հայրենիքի տընտեսական հզորության ամրապնդման, մեր ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի ստալինյան հանճարեղ պլանի բաղկացուցիչ մասը։

Այդպիսի կառուցումներ չեն կատարում և չեն կարող կատարել պատերազմի տենդով բռնված կապիտալիստական երկրները։ Շահույթի ետևից ընկած միլիոնատերերը անապատները կենդանացնելու փոխարեն բարբարոսաբար ոչնչացնում են անտառները, ուժասպառ անում և անբերրի դարձնում հողերը։

ԱՄՆ-ում Մեծ հարթավայրերի անտառապատման «լայն ծրագրի» կենսագործումը

կատարվեց ընդամենը 12—14 տոկոսով և այնուհետև մի կողմ նետվեց։ Ձախողված է նաև անտառների վերականգնման պլանը Անգլիայում, որն ընդունված էր երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո։

1908-ից մինչև 1938 թվականը, 30 տարվա ընթացքում, ոչնչացվեց Ամերիկայի բոլոր անտառների 40 տոկոսը։ 1938 թվականից անտառների ոչնչացումը ընթացավ ավելի արագ տեմպով։ 1941—1945 թվականներին անտառների ոչնչացումն ընթացավ մեկ ու կես անգամ ավելի արագ, քան անտառաաճումը։ Իրենց, ամերիկացիների խոստովանությամբ, եթե այդ տեմպերը պահպանվեն, ապա մոտիկ ապագայում Ամերիկայի բոլոր անտառները երկրի երեսից կչնչվեն։

Ստալինյան դարաշրջանի հոյակապ կառուցումները իրագործելու է մեր ամբողջ երկիրը։ Այդ վիթխարի նախագծումները կկենսագործվեն ժամանակին, որովհետև դրանք Մեծ Ստալինի նախագծումներն են, որովհետև մեր ժողովուրդը դրանք կառուցում է իր համար, իր փայլուն ապագայի՝ կոմունիստական հասարակության համար,— իր խոսքն ավարտում է ագիտատորը։



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԲԻՆԵՏՆ ՕԳՆՈՒՄ Է ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Հազարից ավելի ագիտատորներ են աշխատում Երևանի Ստալինյան ռայոնի արդյունաբերական ձեռնարկություններում։ Նրանք ամեն օր աշխատավորների լայն մասսաներին են հասցնում բոլշևիկյան ճըշմարտացի խոսքը, բանվորներին, բանվորուհիներին, վարպետներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին պարզաբանում են ՍՍՌՄ միջազգային ու ներքին դրության հարցերը. նրանք լայնորեն տարածում են նորարարների փորձը, որով և նպաստում են այն նորի, առաջավորի, պրոգրեսիվի արմատավորմանը, որ ծնվում է սոցիալիստական մրցության ընթացքում։

Ագիտատորների աշխատանքը բեղմնավոր կարող է լինել միայն այն դեպքում, երբ նրանց սիստեմատիկ օգնություն ցույց կըտրվի վրույցները նախապատրաստելու և անցկացնելու գործում, ձեռք բերելու համապատասխան գրականություն, ցուցադրական

պիտույքներ և տեղական նյութեր։ Այդ գոր-
ծում մեծ են պարտիայի շրջկոմներին և քաղ-
կոմներին կից պարտիական կաբինետների
անելիքները։ Պարտկաբինետը դա այն
կենտրոնն է, որտեղից ագիտատորը կարող
է և պետք է ստանա անհրաժեշտ օգնություն.
իրեն հետաքրքրող բոլոր հարցերի սպա-
ռիչ պատասխանը։ Ագիտատորների համար
պետք է ընտրվեն և պարտկաբինետներում
կենտրոնացվեն անհրաժեշտ նյութեր, գրա-
կանություն, դիագրամաներ, սխեմաներ և
այլն։

Իր այս խնդիրը լավ է կատարում ՀԿ(բ)Պ
Ստալինյան ռայկոմի պարտիական կաբինե-
տը։ Հատկապես կարևորագույն քաղաքական
կամպանիաների անցկացման ժամանակ նա
գործնական օգնություն է ցույց տալիս աշ-
խատավորների ձեռնարկություններ ագի-
տատորներին։ Օրինակ՝ ՍՍՌՄ Գերագույն
Սովետի ընտրությունների նախապատրաստ-
ման և անցկացման օրերին ավելի ընդար-
ձակվեցին պարտկաբինետի և ագիտատոր-
ների կապերը։ Պարտկաբինետ էին գալիս
տասնյակ ագիտատորներ, ստանալով այն-
տեղից նյութեր, ցուցադրական պիտույքներ,
օգնության համար նրան դիմելով բազմա-
թիվ ու բազմազան հարցերով։ Ագիտատոր-



ների համար պարտկաբինետում և տեղերում
սիստեմատիկաբար անցկացվում էին խոր-
հրդակցություններ, սեմինարներ։ Պարտ-
կաբինետը ընդհանրացրեց և մասսայակա-
նացրեց լավագույն ագիտատորների փորձը։

Օգտագործելով ընտրությունների նախա-
պատրաստման ու անցկացման օրերին ագի-
տատորների հետ կատարված աշխատանքի
հսկայական փորձը, Հայաստանի Կ(բ)Պ
Ստալինյան ռայկոմի պարտկաբինետը շա-
րունակում է մեծ աշխատանք կատարել ա-
գիտատորների հետ։ Պարտկաբինետում, որ-
պես կանոն, ամսական մեկ անգամ անց է
կացվում ագիտկոլեկտիվների ղեկավարնե-
րի սեմինար։ Այդ սեմինարներում վերջին ա-
միսներին հրահանգչական զեկուցումներ են
տրվել՝ «Ինչպես կառուցել էլեկտրաէներ-
գիայի և հումքի խնայողության հարցին
նվիրված զրույցը», «Փոխառության բաժնե-
գրման կամպանիայի նշանակությունը»,
«Սոցիալիստական պետության բյուջեն խա-
ղաղության բյուջե է», «Սովետական ժողո-
վուրդը միահամուռ կերպով ստորագրում է
Ստոկհոլմյան կոչի տակ», «Ինչպես կառու-
ցել միջազգային թեմաների շուրջն անցկաց-
վող զրույցը», «Ինչպես հրահանգավորել ա-
գիտատորներին» և այլ թեմաների շուրջ։

Պարտկաբինետը որոշակի աշխատանք է տանում ագիտատորների քաղաքական պատրաստականության բարձրացման, նրանց կուլտուրական մտահորիզոնի ընդլայնման ուղղությամբ։ Այսպես, պարտկաբինետը՝ ագիտատորների համար դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ է կազմակերպել այնպիսի թեմաների շուրջ, ինչպես օրինակ՝ «Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական Կոնստիտուցիան է աշխարհում», «Սովետական ընտրական սիստեմի առավելությունները բուրժուական ընտրական սիստեմի նկատմամբ», «Լենինի-Ստալինի պարտիան սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է», «Ադրբեջանում սովետական իշխանության հաստատման 30-ամյակը», «Սովետական ժողովուրդների ստալինյան բարեկամությունը», «Հայկական ՍՍՌ ընդերքի հարստությունները» և այլն։ Այդպիսի դասախոսություններ ու զեկուցումներ անց են կացվում ոչ միայն պարտկաբինետում, այլև ձեռնարկություններում՝ առանձին ագիտկոլեկտիվների համար։

Պարտկաբինետում կան հատկապես ագիտատորների համար ընտրված նյութերի ցու-



ցափեղկեր։ Այդ ցուցափեղկերում դրված են թերթերից կտրված առանձին հոդվածներ, ինչպես նաև ժուռնալներ, զանազան հարցերի վերաբերյալ հանրամատչելի բրոշյուրներ և այլն։ Պարտկաբինետում կան նաև ցուցադրական նյութեր, որոնք արտացոլում են ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը, պլանների կատարման ու գերակատարման և արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարում առանձին գործարանների ու ֆաբրիկաների աշխատանքի փորձը, արտադրության առաջավորների աշխատանքի ցուցանիշները։

Երբ Ստալինյան ռայոնի առաջավոր ձեռնարկությունները արագ կերպով արձագանքեցին Լիդիա Կորաբելնիկովայի հայրենասիրական նախաձեռնությանը և սկսեցին աշխատել նրա օրինակով, պարտկաբինետը ուսումնասիրեց ռայոնի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի փորձը, պատրաստեց դիագրամաներ, պլակատներ, որոնք ցույց էին տալիս, թե ինչպես առաջավորներն արմատավորում են իրենց մոտ Կորաբելնիկովայի աշխատանքի մեթոդները։ Պարտկաբինետի հավաքած տվյալներն ու փաստերը լավագույն նյութ տվին ագիտատորների զրույցների համար։

Ագիտատորները հաճախ պարտկաբինետին են օգնության դիմում զանազան հարցերով: Էլեկտրանորոգման գործարանում վերջին ժամանակներս աշխատանքի անցած երիտասարդ բանվորներից ոմանք խախտում էին աշխատանքային կարգապահությունը, անհրաժեշտ էր նրանց հետ հատուկ զրույցներ անցկացնել աշխատանքային կարգապահության հարցերի մասին, նրանց նկատմամբ առանձին մոտեցում ունենալ: Ագիտատոր Խ. Թորոսյանը այդ հարցով դիմեց պարտկաբինետի վարիչ ընկ. Գ. Ավետիսյանին: Ագիտատորի հետ ունեցած իր զրույցում ընկ. Ավետիսյանը մի շարք արժեքավոր խորհուրդներ տվեց նրան: Նա ագիտատորին խորհուրդ տվեց այդ բանվորների հետ մի քանի զրույցներ անցկացնել սովետական երիտասարդության հայրենասիրական սխրագործությունների մասին, նրա տրամադրության տակ դնելով համապատասխան նյութեր ռայոնի առանձին ձեռնարկությունների առաջավոր երիտասարդ բանվորների աշխատանքի փորձի մասին: Նա օրինակ բերեց երիտասարդ բանվորներից Սարգիս Ասոյանին և Գրիշա Ղալաչյանին (Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարան), Ռադիկ Մելիքյանին և



Նորիկ Մնացականյանին (Ավտոդետալ գործարան), Թամարա Արսենյանին (Էլեկտրամեքենաշինական գործարան) և ուրիշներին, որոնք իրենց արտադրական պլանները սիստեմատիկաբար կատարում են 200—300 տոկոսով, հանդես են գալիս որպես սոցիալիստական մրցության և արտադրության ռացիոնալիզացիայի նախաձեռնողներ, և այժմ էլ կանգնելով խաղաղության հերթափոխի՝ իրենց անձնվեր աշխատանքով ձեռք են բերում նորանոր նվաճումներ: Ընկ. Ավետիսյանը ագիտատորին մանրամասնորեն պատմելով այդ երիտասարդ բանվորների հայրենասիրական գործերի մասին, միաժամանակ նրան մեթոդական ցուցումներ տըվեց, թե ինչպես պետք է կազմակերպել այդ թեմայով անցկացվելիք զրույցը, ինչպես օգտագործել այդ նյութերը:

Ձեթ-օճառ կոմբինատի ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Ն. Ազատյանը պարտկաբինետին դիմեց այն հարցով, թե ինչպես պետք է կազմակերպել ցուցադրական ագիտացիան կոմբինատի ցեխերում, իսկ Կոշիկի № 3 ֆաբրիկայի պարտկազմակերպությանը կից ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Հ. Բուղդադարյանը պարտկաբինետ եկավ կոնսուլտացիա ստանալու, թե ինչպես պետք է օգնել

ագիտատորներին, որպեսզի նրանք իրենց զրույցների ընթացքում ընդհանուր քաղաքական հարցերը կապակցեն ֆաբրիկայի կոնկրետ խնդիրների հետ։ Այդ ընկերների բոլոր հարցերին պարտկաբինետում տրվեց հստակ, սպառիչ պատասխան։ Այդպիսի օգնություն են ստանում նաև մյուս ագիտկոլեկտիվների ղեկավարները։

Պարտկաբինետը մեծ ուշադրություն է դարձնում լավագույն ագիտատորների աշխատանքի փորձի ուսումնասիրմանը, ընդհանրացմանն ու մասսայականացմանը։ Կարբիդի գործարանի ագիտատոր ընկ. Սարգիս Համբարձումյանը աշխատավորների մեջ ագիտացիոն աշխատանքի բավական արժեքավոր փորձ է կուտակել։ Զրույցների ժամանակ նա հաշվի է առնում իր ունկնդիրների պահանջները. նախքան զրույցի կազմակերպումը, խորհրդակցում է ագիտկոլեկտիվի ղեկավարի հետ, նրա օգնությամբ հավաքում է հետաքրքիր փաստեր և օրինակներ գործարանի և այն ցեխի աշխատողների մասին, որտեղ ինքն ագիտացիոն աշխատանք է կատարում։ Նա չի բավարարվում միայն խմբակային զրույցներով, անհրաժեշտության դեպքերում անց է կացնում նաև անհատական զրույցներ առանձին բանվորների հետ։



Պարտկաբինետը հանգամանորեն ուսումնասիրել է ընկ. Ս. Համբարձումյանի ագիտացիոն աշխատանքի փորձը և այն լայնորեն օգտագործում է ագիտկոլեկտիվների ղեկավարների սեմինար պարապմունքների ժամանակ։ Ներկայումս պարտկաբինետի աշխատողներն ուսումնասիրում են էլեկտրամեքենաշինական գործարանի ագիտատոր ընկ. Հ. Սարգսյանի փորձը։

Ագիտատորներին ավելի էֆեկտավոր և կոնկրետ օգնություն ցույց տալու և նրանց թերությունները բացահայտելու համար պարտկաբինետի աշխատողները հաճախ տեղերում լսում են նրանց զրույցները, ագիտկոլեկտիվների ղեկավարների սեմինարներում և ագիտատորների խորհրդակցություններում քննության առարկա են դարձնում այդ զրույցների բովանդակությունը և կոնկրետ օրինակների հիման վրա ցույց տալիս, թե ինչպես պետք է կառուցվի զրույցը։

Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

# ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵԹՈԴԸ

Հ. ԴԱՎԹՅԱՆ
Լենինականի Տեքստիլ կոմբինատի
ենթավարպետ

*Տեքստիլ արդյունաբերության մեջ բրի-
գադան, կամ ինչպես մենք, տեքստիլագործ-
ներս ենք ասում՝ կոմպլեկտը դա աշխա-
տանքի կազմակերպման ամենատարրին բա-
ժանումն է, բանվորական կոլեկտիվի բջիջը։
Եթե յուրաքանչյուր կոմպլեկտ կատարի իր
առաջադրանքները, ապա ապահովված կլի-
նի ամբողջ ցեխի, կորպուսի, ֆաբրիկայի և
կոմբինատի պլանների կատարումը։*

*Կոմպլեկտի ղեկավարը, բրիգադիրը են-
թավարպետն է, որն իր կոմպլեկտում հան-
դիսանում է դազգահները սարքավորողը և
ամբողջ աշխատանքի կազմակերպողը։ Եվ
որպես կանոն կարելի է ասել, որ եթե են-
թավարպետը գտնվում է իր կոչման բարձ-
րության վրա, եթե նա հաջողությամբ կա-
տարում է իր բոլոր պարտականություննե-
րը, ապա կոմպլեկտում ապահովված է աշ-*



*խատանքային կայուն կարգապահությունը, պլանների սիստեմատիկ կատարումը։*

*Ավարտելով ֆաբգործուսի դպրոցը ես ահա 20 տարի է, ինչ աշխատում եմ Լենինականի Տեքստիլ կոմբինատի գործվածքային ֆաբրիկայում, որպես ենթավարպետ։ Ես սիրում եմ իմ գործը և միշտ էլ ձգտե; եմ հետ չմնալ ընկերներից, մեր կյանքի առաջընթաց տեմպից։*

*Ես ղեկավարում եմ 72 դազգահ, տեխնիկական կանոններով սահմանված 36 դազգահի փոխարեն։ Իմ ղեկավարած կոմպլեկտը համարվում է կոմբինատի առաջավոր կոմպլեկտներից մեկը, նա տարիներ շարունակ կատարում և գերակատարում է իր պլանները։ 1949 թվականի պլանը կոմպլեկտը կատարեց 123 տոկոսով, երկրին պլանից դուրս տալով ավելի քան 82 հազար մետր գործվածք։ Այս տարվա անցած 8 ամիսների իր պլանը մեր կոմպլեկտը կատարեց 148,6 տոկոսով, պլանից դուրս երկրին տալով ավելի քան 89 հազար մետր գործվածք։ Սեպտեմբեր ամսվա սկզբներին կատարելով տարեկան պլանը մենք այժմ աշխատում ենք 1951 թվականի հաշվին։*

*Այժմ համառոտակի կերպով այն մասին, թե ինչպես ենք մենք աշխատում։ Նախ իմ*

աշխատանքի մասին, թե ինչպես եմ ես կազմակերպում ու ղեկավարում աշխատանքն իմ կոմպլեկտում։

Ինչ խոսք, որ լավ ղեկավար լինելու համար ենթավարպետը նախ և առաջ պետք է խորապես տիրապետի իր գործի տեխնիկային, ունենա տեխնիկական լավ պատրաստականություն։ Բայց ենթավարպետի, որպես ղեկավարի համար, տեխնիկական գիտելիքներից ոչ պակաս առաջնակարգ նշանակություն ունի նաև այն, թե նա ինչպիսի կազմակերպչական հատկություններ ունի, ինչպես է կազմակերպում մեքենաների վերանորոգման գործը, ջուլհակների աշխատանքը։

Կազմակերպչական գործը, այսինքն ինչպես կազմակերպել, պլանավորել օրվա աշխատանքը, ինձ համար միշտ էլ առաջնահերթ նշանակություն ունի։ Իմ բազմամյա փորձից ես լավ գիտեմ, որ նույն քանակի աշխատանքը իր գործը ճիշտ պլանավորող ենթավարպետը կկատարի շատ ավելի քիչ ժամկետում, քան անպլանային կարգով աշխատող ենթավարպետը։

Մեր ամբողջ բրիգադան աշխատանքի է գալիս 15—20 րոպե շուտ, որպես անխախտ կանոն, հերթափոխ ենթավարպետի հետ ես



ստուգում եմ ամբողջ կոմպլեկտի վիճակը, տեղեկանում, թե ինչ դրության մեջ է գտնվում յուրաքանչյուր դազգահ։ Այս ստուգումն այն արդյունքն է տալիս, որ իմ բրիգադան (նոր հերթափոխը) մեքենաներն ընդունում է ամբողջովին պատրաստի վիճակում, օրվա աշխատանքի համար ապահովում է անհրաժեշտ հենքի, միջնաթելի քանակությունը, կանխատեսում է հերթափոխի ընթացքում կատարվելիք պրոֆիլակտիկ վերանորոգումները։ Այսպիսով ինչպես ես, այնպես էլ բրիգադայի ջուլհակները, աշխատանքի անցնելուց առաջ արդեն ամբողջովին «կուրսի մեջ» ենք լինում, աշխատանքային ռիթմին լրիվ տիրապետած։ Մինչև իմ հերթափոխի աշխատանքի անցնելը ես հիմնականում արդեն վերացրած եմ լինում նկատված թերությունները։

Ինչպե՞ս եմ ես վերացնում մեքենաների խափանումները աշխատանքային օրվա ընթացքում։ Ելնելով իմ իսկ փորձից, ես մշակել եմ մեքենաների խափանումների վերացման շրջանաձև մարշրուտ։ Այդպիսի մարշրուտն առանձնապես անհրաժեշտ է, երբ ենթավարպետը աշխատում է բարձր խտացմամբ։ Շրջանաձև մարշրուտով աշխատել այդ նշանակում է վթարված մեքենան սար-

քավորելու համար ոչ թե կոմպլեկտի մեկ ծայրից մյուսը վազել, այլ շարժվել հատուկ մարշրուտով, այդպիսով խնայելով ժամանակը:

Բայց մարշրուտով շարժվելու ժամանակ էլ ես իրար ետևից հաջորդաբար չեմ վերացնում բոլոր վթարումները: Եթե տվյալ մեքենայի վթարումը վերացնելն ինձանից շատ ժամանակ է պահանջելու, ապա ես այն թողնում և անցնում եմ հաջորդ մեքենաների վթարումները վերացնելուն, որոնք ավելի քիչ ժամանակ են պահանջում: Այսպես վարվելով ես հասնում եմ այն բանին, որ իմ կոմպլեկտում վթարումների պատճառով չաշխատող մեքենաների քանակը հասցնում եմ մինիմումի:

Ինչպես արդեն ասացի, ենթավարպետն իր կոմպլեկտում հանդիսանում է նաև ադմինիստրատիվ ղեկավարը, ջուլհակների աշխատանքը կազմակերպողը: Նա պետք է ջուլհակներին սովորեցնի աշխատանքային նորագույն մեթոդները, բարձրացնի նրանց տեխնիկական պատրաստականության մակարդակը:

Իմ կոմպլեկտում աշխատող ջուլհակները բոլորն էլ երիտասարդներ են, բայց աշխատում են բարձր խտացմամբ: Ես նրանց



նույնպես սովորեցրել և պահանջում եմ աշխատել կայուն մարշրուտով: Շարժվելով այդ մարշրուտով ջուլհակը հերթափոխի ընթացքում հավասար չափով կմոտենա յուրաքանչյուր մեքենայի, կհարդարի, կարգի կբերի հենքը, կհետևի գործվածքի որակին: Բացի դա, նա այդպիսով հնարավորություն կունենա կարճ ժամանակվա ընթացքում լիկվիդացնել ավելի շատ թելերի կտրվածքներ և մշտապես աշխատանքի մեջ պահել մաքսիմում թվով մեքենաներ:

Մեր այս հաջողություններին մենք հասել ենք նաև շնորհիվ այն բանի, որ լայնորեն օգտագործում ենք մեր երկրի առաջավոր բանվորների, նորարարների աշխատանքի փորձը: Այսպես, մանրակրկիտ կերպով ուսումնասիրելով անվանի վարպետի օգնական Ալեքսանդր Զուտկինի աշխատանքի փորձը, ես այն բացատրեցի իմ բրիգադայի անդամներին և սկսեցինք հետևողականորեն կիրառել մեր կոմպլեկտում: Աշխատելով զուտկինյան մեթոդներով մենք հասանք այն բանին, որ կոմպլեկտի արտադրած գործվածքի 97—99 տոկոսն առաջին տեսակի է, պլանով նախատեսված 93,5 տոկոսի փոխարեն:

Ընդօրինակելով Վլադիմիր Վորոշինի փորձը մենք կոմպլեկտում ստեղծեցինք աշխա-

տանքի օրինակելի, կուլտուրական պայմաններ։ Մարիա Ռոժնևայի և Լիդիա Կոնոնենկոյի փորձի կիրառմամբ մենք համանք ինչպես հենքի, միջնաթելի լրիվ օգտագործման, այնպես և պահեստի մասերի գգալի խնայողության։

Կոմպլեկտի ռիթմիկ աշխատանքի, պլանների կատարման գործում մեծ նշանակություն ունի ջուլհակների համերաշխ աշխատանքը։ Առաջին հայացքից այս կարող է անիմաստ թվալ, քանի որ յուրաքանչյուր ջուլհակ իր մեքենաներն ունի և աշխատում է անհատական գործարքով։ Բայց իհարկե այդ այդպես չի։ Մեր բրիգադայում, օրինակ, ջուլհակներն աշխատում են շատ համերաշխ, յուրաքանչյուրը իրեն պատասխանատու է զգում ամբողջ բրիգադայի պլանների կատարման համար։ Ջուլհակներն իրար օգնում են ինչպես խորհուրդներով, այնպես և աշխատանքի ընթացքում։

Մեկ անգամ մեր ջուլհակներից մեկը հիվանդության պատճառով դուրս չէր եկել աշխատանքի։ Ջուլհակուհիներ Քնարիկ Ստեփանյանը և Շնորիկ Անուշյանը դիմեցին ինձ, խնդրելով թույլ տալ աշխատացնելու նաև իրենց հիվանդ ընկերուհու մեքենաները։ Ես համաձայնվեցի։ Երեք օր հիվանդ ջուլ-



հակուհին աշխատանքի չեկավ և երեք օրն էլ նրա մեքենաներն սպասարկեցին ընկերուհիները՝ կատարելով նաև այդ 16 մեքենաների պլանները։

Մի քանի ամիս առաջ մեր կոմբինատի երկու ենթավարպետների հետ միասին մենք եղանք Մոսկվայում, ուր անձամբ ծանոթացանք Ալեքսանդր Չուտկիխի և Վլադիմիր Վորոշինի հետ։ Մենք մանրամասն ուսումնասիրեցինք անվանի նորարարների աշխատանքի մեթոդները, նրանք սիրով պատասխանեցին մեզ հետաքրքրող հարցերին։

Վերադառնալով Մոսկվայից, ես ձգտում եմ կիրառել մայրաքաղաքի արտադրության առաջավորների փորձը։ Մեր առաջադրանքով Կոմբինատի դիրեկցիան մեզ, ենթավարպետներիս համար պատրաստել է կոմբինացված պահարաններ՝ Վորոշինի պահարանի օրինակով։ Այդ պահարանները Կոմբինատի ենթավարպետների համար ստեղծեցին աշխատանքի կուլտուրական պայմաններ, ավելի բարձր արտադրողականությամբ աշխատելու հնարավորություն։

———∞———

# ՄԵՐ ԲԱՌԱՐԱՆԸ

**Դեւալվացիա.**— *Դրամական ռեֆորմ, որի ժամանակ պետությունը հատուկ որոշումով պակասեցնում է ոսկու այն քանակը, որին հավասարեցվում է թղթադրամների միավորը: Այդ արվում է սովորաբար այն ժամանակ, երբ թղթադրամը մեծ չափով կորցնում է իր արժեքը: Բայց 1949 թ. կապիտալիստական շատ երկրներում՝ Անգլիայում, Ֆրանսիայում, Բելգիայում, Հոլանդիայում, Լատինական Ամերիկայի և այլ երկրներում— ԱՄՆ-ի ճնշման տակ անցկացրին իրենց վալյուտաների դեւալվացիա՝ դոլարի կուրսի նկատմամբ, արժեքազրկելով սեփական երկրների վալյուտաները դոլարի նկատմամբ:*

**Դեգրադացիա.**— *Անկում, սիստեմատիկ, անդադար անկում, հետաճում, այսպես օրինակ, Տաճկաստանի գյուղատնտեսությունը անդադար դեգրադացիայի է ենթարկվում:*

**Ուոլլ-Ստրիտ.**— *Ֆոնդային բիրժայի անունը Նյու-Յորքում (այն փողոցի անունով, որի վրա գտնըվում է այդ բիրժան): Բայց ներկա գործածական իմաստով Ուոլլ-Ստրիտը համանուն է Ամերիկայի Միացյալ Նահանգների ֆինանսական կապիտալի հետ: Այդտեղ են կենտրոնացված ամերիկյան միլիարդատե-*



*րերի խոշորագույն բանկերը: Այդ բանկային (ֆինանսական) կապիտալը շատ սերտորեն կապված է ամերիկյան ղեկավարող շրջանների հետ:*

*Ամերիկյան կառավարության ողջ ապարատը, նրա քաղաքականությունը ամբողջությամբ թելադրվում, ուղղություն է ստանում Ուոլլ-Ստրիտի տերերի կողմից— դոլարի արքաների կողմից: Դրա համար էլ քաղաքական գրականության մեջ, մամուլում ԱՄՆ-ի Պետական դեպարտամենտի (Արտաքին գործերի մինիստրության) և պետության ամբողջ քաղաքականությունն անվանվում է Ուոլլ-Ստրիտի քաղաքականություն— պատկերելով ֆինանսական օլիգարխիայի գազանային, շահամոլ և իմպերիալիստական քաղաքականությունը:*

**Սիտի.**— *Տառացի իմաստով քաղաք, ներկա գործածական իմաստով— Լոնդոնի հնագույն կենտրոնական մասը, որտեղ տեղավորված են անգլիական արդյունաբերական, ֆինանսական և առևտրական ձեռնարկությունները: Անգլիական բոլոր կառավարությունները, ներառյալ նաև ներկայիս լեյբորիստական կառավարությունը, հանդիսացել և հանդիսանում են Սիտիի տերերի կառավարությունը: Նրանք իրականացրել և իրականացնում են անգլիական իմպերիալիզմի քաղաքականությունը:*

**Օբստրուկցիոնիստական գիծ.**— *Ծագել է լատինական օբստրուկցիա բառից, որը նշանակում է այնպիսի մի քաղաքականություն, ըստ որի պառլամեն-*

տի անդամների, ժողովականների, խորհրդի նիստի մասնակիցների կամ այլ օրգանների (դատարանի, միտինգի, խորհրդակցության մասնակիցների) որոշ խումբ ցանկանում է խանգարել պառլամենտի, ժողովի, խորհրդի նիստերի նորմալ ընթացքը երկար ելույթների, դիտավորյալ ձգձգումների միջոցով։

Պատմության մեջ տեղի են ունեցել պառլամենտական օբստրուկցիայի մի շարք դեպքեր, օրինակ, Ավստրո-Հունգարիայում, 1897—1914 թ. թ. ժամանակաշրջանում, երբ պայքար էր գնում գերմանացիների և ավստրիացիների հեգեմոնիայի դեմ (չեխերի և հունգարացիների կողմից)։ Պառլամենտի նիստերը դիտավորյալ երկարացվում էին մինչև ուշ գիշեր, դեպուտատները նիստերի էին գալիս բարձերով։ Երբեմն էլ պառլամենտական օբստրուկցիան վերջանում է աղմկալից տեսարաններով, ծեծով, երբեմն էլ կրակոցներով։ ՄԱԿ-ի Անվտանգության Խորհրդի նախագահ՝ ՍՍՌՄ-ի ներկայացուցիչ ընկ. Մալիկը, Ամերիկայի Միացյալ Նահանգների և նրանց կողմնակիցներին ներկայացրեց արդարացի մեղադրանք օբստրուկցիոնիստական գիծ վարելու մեջ— Անվտանգության Խորհրդի քննարկմանը դրված Սովետական Միության առաջարկի՝ Հյուսիսային և Հարավային Կորեայի ներկայացուցիչներին Խորհրդի նիստերին միաժամանակ հրավիրելու հարցի քննարկման գործում, դիտավորյալ կերպով, զանազան մոտիվներով հետաձգելով այդ հարցի արդարացի լուծումը։

———□———

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս է տեսել.*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*—Աջ թեքման մասին ՀամԿ(բ)Պ-ում: *116 էջ, գինը 1 ռ. 25 կոպ.։*

*Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ. Խ. ՀԵՔԻՄՅԱՆ, Գ. ԽԱԼԱԹՅԱՆ.*—Ճերամապահության համառոտ ձեռնարկ: *162 էջ, գինը 4 ռ.։*

*ԱՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ.*—Քաղաքների և գյուղերի կանաչազարդումը: *60 էջ, գինը 1 ռ. 25 կոպ.։*

*Ա. ԹՈՒՄԱՆՅԱՆ, Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ.*—Բանջարաբուծության զարգացումը Հայկական ՍՍՌ լեռնային շրջաններում: *30 էջ, գինը 50 կոպ.։*

*Մ. Ա. ՄԱՐԴԱՐՅԱՆ.*—Ճերամապահությունը Մեղրու Ստալինի անվան կոլխոզում: *32 էջ, գինը 50 կոպ.։*

*Մ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ.*—Խոշոր եղջերավոր կենդանիների թեյլերիոզը և պայքարը նրա դեմ: *17 էջ, գինը 25 կոպ.։*

*Է. Ա. ԳԵՐԱՍԻՄՅԱՆ.*— Հորթերի կերակրումը և խնամքը: *53 էջ, գինը 1 ռ. 10 կոպ.։*

———⊙———

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

